Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



(ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմին կից Մարքսի-Էնգելսի-Լենինի ինստիտուտի նյութերը)

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԸ ԵՎ ՈՒՍՈՒՑԻՉԸ

## Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Մարդկության 19-րդ և 20-րդ դարերի պատմության մեջ բարձրանում են չորս հոյակապ կերպարները հանճարեղ մտածողներ և մեծագույն ռևոլյուցիոներներ Մարքսի, Էնգելսի, Լենինի և Ստալինի, որոնք իրենց ուսմունքով լուսավորեցին կապիտալիզմի դեմ, սոցիալիզմի հաղթանակի համար ամբողջ աշխարհի աշխատավորական միլիոնավոր մասսաների պայքարի ուղին։

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը Վլադիմիր Իլյիչ Լենինի բարեկամն ու զինակիցն է, նրա գործի մեծ շարունակողը։ Ստալինը Լենինն է այսօր, ասում են մեզ մոտ պարտիայի և ժողովրդի մեջ։

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի պանծալի, հերոսական աշխատանքներով ու սխրագործություններով լի ամբողջ կյանքը, պատմանեկական հասակից նվիրված է բանվոր դասակարգի գործի համար, բանվոր դասակարգի դրության բարելավման և նրա վերելքի համար, ժողովրդի և ամբողջ աշխատավոր մարդկության երջանկության համար մղվող պայքարին։ Ի. Վ. Ստալինի ամբողջ կյանքը, նրա անձնուրաց ծառայությունը ժողովրդին մեծ, ոգեշնչող օրինակ է յուրաքանչյուր կոմունիստի համար, հանուն բանվոր դասակարգի գործի, հանուն կոմունիզմի բոլոր մարտնչողների համար։

«Եթե բանվոր դասակարգին բարձրացնելու և այդ դասակարգի սոցիալիստական պետությունն ամրապնդելու ուղղությամբ իմ կատարած աշխատանքի յուրաքանչյուր քայլը ի սպաս դրված չլիներ բանվոր դասակարգի դրությունն ամրապնդելու և բարելավելու գործին, ապա ես անպատակ կհամարեի իմ կյանքը»,—ասել է ընկեր Ստալինը։

Ընկեր Ստալինը ավելի քան 50 տարի անդուլ կերպով պայքարում է բանվոր դասակարգի գործի համար, աշխատավորների երջանկության համար։ Նրա ամբողջ կյանքն անխզելիորեն կապված է բոլշևիկների մեծ պարտիայի պատմության հետ, բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության պատմության հետ։ Ստալինյան հանճարը, ստալինյան իմաստությունը, ստալինյան կամքը մարդկության պատմության մեջ մտել են որպես հզոր, հրաշագործ ուժ, որը մոբիլիզացնում է մասսաներին, վերափոխում աշխարհը։

Ընկեր Ստալինի անունն ամենաթանկագին անունն է մեր ժողովրդի համար, ամբողջ երկրագնդի 100 միլիոնավոր աշխատավորների համար։ Ստալինը բոլոր աշխատավորների և կեղեքվածների լուսաշող հույսն է։ Ստալինը պայքարի դրոշ է ամբողջ մարդկության երջանիկ ապագայի համար, կապիտալիստական ստրկության դեմ, նոր պատերազմի հրձիգների դեմ, խաղաղության, ժողովուրդների բարեկամության համար, սոցիալիզմի համար պայքարի դրոշ։

Ստալինը բոլշևիկյան պարտիայի, սովետական ժողովրդի իմաստուն առաջնորդն է և ուսուցիչը, սոցիալիստական ռևոլյուցիայի հանճարեղ ստրատեգը, բոլոր ժամանակների և ժողովուրդների մեծագույն զորավարը, որը Եվրոպայի և ամբողջ աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացումից։ Ստալինը բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծողն է ու ղեկավարը, սոցիալիզմի բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը, մի-



ջազգային բանվոր դասակարգի, ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդը և ուսուցիչը։

Ստալինը գլխավորում և ոգեշնչում է Սովետական Միության ժողովուրդների պայքարը սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար։ Ստալինը գլխավորում և ոգեշնչում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի վսեմ, արդարացի պայքարը ագրեսորների ու նոր պատերազմի հրձիգների դեմ՝ հանուն խաղաղության պաշտպանության, հանուն մարդկության երջանկության։

Մեր Հայրենիքի և ամբողջ աշխարհի աշխատավորները պատրաստվում են Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի առաջիկա 70-ամյակը նշել որպես ամբողջ պրոգրեսիվ մարդկության մեծ տոն։

## I. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԶԻՆԱԿԻՑՆ Է ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎԱԾ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Լենինը և Ստալինը, Մարքսի ու Էնգելսի գործի և ուսմունքի մեծ շարունակողները, ռևոլյուցիոն շարժման ասպարեզ դուրս եկան 19-րդ դարի վերջին, երբ համաշխարհային բանվորական շարժման կենտրոնը Արևմտյան Եվրոպայից սկսել էր տեղափոխվել Ռուսաստան։ Ցարական Ռուսաստանն իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետն էր։ Ռուսաստանում հասունանում էր մեծագույն ժողովրդական ռևոլյուցիան, որի գլուխ կանգնում էր աճող ու ամրապնդվող, աշխարհի ամենառևոլյուցիոն ռուսաստանյան պրոլետարիատը, որն ուներ այնպիսի լուրջ դաշնակից, ինչպիսին Ռուսաստանի ռևոլյուցիոն գյուղացիությունն էր։ Ռուսաստանը հանդիսացավ հայրենիքը պրոլետարական ռևոլյուցիայի թեորիայի ու տակտիկայի, հայրենիքը լենինիզմի՝ իմպերիալիզմի ու պրո-

տարական ռևոլյուցիայի դարաշրջանի մարքսիզմի, իսկ ռուսական կոմունիստների առաջնորդ Լենինը՝ նրա կերտողը։ Լենինիզմի իդեոլոգիան ու քաղաքականությունը մշակելու, իշխանության գրավման համար պրոլետարիատին առաջնորդելու ընդունակ մարքսիստական ռևոլյուցիոն պարտիա, նոր տիպի պարտիա, լենինիզմի պարտիա ստեղծելու գործում Լենինի մեծագույն զինակիցն ընկեր Ստալինն էր։

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը (Ջուղաշվիլի) ծնվել է 1879 թվի դեկտեմբերի 21-ին Թիֆլիսի նահանգի Գորի քաղաքում, վրացի բանվորի ընտանիքում։ Ստալինը ռևոլյուցիոն շարժման մեջ մտել է 15 տարեկան հասակից, երբ նա կապվում է Անդրկովկասում ապրող ռուսական մարքսիստների ընդհատակյա խմբերի հետ։ Ստալինը շատ ու համառ աշխատում է իր վրա, դառնում է կրթված մարքսիստ։

1898 թվի օգոստոսին Ստալինը մտնում է Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի Թիֆլիսի կազմակերպության մեջ։ Ստալինի ղեկավարությամբ Անդրկովկասում ստեղծվում են լենինյան-իսկրայական բոլշևիկյան կազմակերպություններ, ծավալվում է մասսայական ռևոլյուցիոն բանվորական շարժումը։

Ստալինն իր ռևոլյուցիոն գործունեության հենց սկզբից ընթացավ լենինյան ուղիով։ Ստալինը հանձին Լենինի տեսավ իսկական մարքսիստական ռևոլյուցիոն պարտիայի առաջնորդին և ուսուցչին, ամենաբարձր տիպի ղեկավարին, պայքարում վախ չիմացող լեռնային արծվին։ Ստալինը անսահման հավատով լցվեց դեպի Լենինի ռևոլյուցիոն հանճարը, դարձավ նրա հավատարիմ աշակերտն ու զինակիցը։

1901 թվի սեպտեմբերին Ստալինի կողմից ստեղծված վրացական սոցիալ-դեմոկրատական «Բրձոլա» («Պայքար») առաջին անլեգալ թերթը հետևողականորեն կիրառում էր լենինյան «Իսկրայի» գաղափարները։ Պարտիայի խնդիրների վերաբերյալ իր հենց առաջին



հոդվածում Ստալինը գրել է. «Մեծ եռանդը ծնվում է միայն մեծ նպատակի համար»։

Լենինը և Ստալինը Ռուսաստանի պրոլետարիատին տարան դեպի մեծ նպատակները։

Երբ պարտիայի 2-րդ համագումարում ՌՍԴԲՊ-ն պառակտվեց բոլշևիկների և մենշևիկների, Ստալինը վճռականորեն անցավ Լենինի, բոլշևիկների կողմը, եռանդուն կերպով ձեռնամուխ եղավ պրոլետարիատի ռևոլյուցիոն պարտիայի կառուցման լենինյան պլանի իրագործմանը։

Ռուս-ճապոնական պատերազմի և ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Ստալինը ղեկավարում է կովկասյան բոլշևիկների պայքարը մենշևիկների, էսերների, նացիոնալիստների, անարխիստների դեմ, Բաքվի բանվորներին ակտիվ պայքարի էր համախմբում ցարական ինքնակալության դեմ։ 1905 թվի դեկտեմբերին Ստալինը առաջին անգամ անձամբ հանդիպեց Լենինին Տամմերֆորսի Համառուսաստանյան բոլշևիկյան կոնֆերանսում։ Ստալինը ՌՍԴԲՊ 4-րդ և 5-րդ համագումարների ակտիվ մասնակիցն է, Լենինի հավատարիմ զինակիցը՝ մենշևիկների դեմ, ռևոլյուցիայի լենինյան գծի համար մղված պայքարում։

Կազմակերպական-գործնական ռևոլյուցիոն գործունեությունը Ստալինը զուգակցում էր թեորիական աշխատանքի հետ։ Նա ստեղծեց մի շարք այնպիսի աչքի ընկնող երկեր, ինչպես՝ «Համառոտակի պարտիական տարաձայնությունների մասին», «Պրոլետարների դասակարգը և պրոլետարների պարտիան», «Զինված ապստամբությունը և մեր տակտիկան», «Անարխի՞զմ թե սոցիալիզմ» և այլն, որոնց մեջ նա պաշտպանում ու զարգացնում է ռևոլյուցիոն պարտիայի՝ Լենինի կողմից մշակված իդեոլոգիական, կազմակերպական, տակտիկական և թեորիական հիմունքները։ Իր աշխատություններում Ստալինը հանդես է գալիս որպես տաղանդավոր պոլեմիստ, որպես պարտիայի գրական և թեորիական խոշորագույն ուժ, պրոլետարիատի քաղա-

քական առաջնորդ, Լենինի հավատարիմ հետևորդ Ստալինի երկերը աչքի են ընկնում թեորիական խորությամբ, օպորտունիզմի նկատմամբ անհաշտությամբ։

Ստոլիպինյան ռեակցիայի շրջանում Լենինի և Ստալինի թեորիական ու պրակտիկ ամբողջ գործունեությունը անցնում է մենշևիկ-լիկվիդատորների ու տրոցկիստների դեմ, անլեգալ ռևոլյուցիոն պարտիան պահպանելու ու ամրապնդելու համար, նոր տիպի պարտիայի համար, նոր ռևոլյուցիա նախապատրաստելու համար անհաշտ պայքար մղելու նշանաբանով։

1907 թվին Ստալինը Բաքվում եռուն աշխատանք է կատարում Բաքվի կազմակերպությունը Լենինի լոզունգների շուրջը համախմբելու, բանվորական մասսաներին բոլշևիզմի դրոշի տակ նվաճելու համար։ Ստալինը իր շուրջն է կազմակերպում փորձված բոլշևիկ-լենինյանների մի ամուր կորիզ, հասնում է բոլշևիզմի լիակատար հաղթանակին Բաքվի կազմակերպության շարքերում։ Բաքուն դառնում է բոլշևիզմի միջնաբերդը։ Ստալինի և նրա մերձավորագույն զինակիցների ղեկավարությամբ Բաքվի պրոլետարիատը հերոսական պայքար էր մղում, գտնվելով համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժման առաջին շարքերում։

Մերկացնելով մենշևիկներին, լիկվիդատորներին, տրոցկիստներին և մյուս դավաճաններին, Լենինը և Ստալինը դրեցին պարտիայում ճգնաժամը հաղթահարելու խնդիրները, որոնք իրագործվեցին 1912 թվի հունվարին ՌՍԴԲՊ Պրագայի կոնֆերանսում։ Կոնֆերանսը մենշևիկներին վտարեց պարտիայից և սկիզբ դրեց նոր տիպի պարտիային, լենինիզմի պարտիային, բոլշևիկների պարտիային։ Ստալինը Լենինի հավատարիմ զինակիցն էր բոլշևիկյան պարտիա ստեղծելու համար մղված պայքարում։ Պրագայի կոնֆերանսը ընկեր Ստալինին, իր բացակայությամբ, ընտրեց պարտիայի Կենտկոմի անդամ։ Լենինի առաջարկությամբ Ստալինի վրա դրվեց Կենտկոմի Ռուսական բյուրոյի ղեկավարությունը։ Ստալինը դառնում է Լենինի



գլխավոր հենարանը և մերձավորագույն զինակիցը ամբողջ պարտիայի ղեկավարման գործում։

Բոլշևիկյան պարտիան Լենինի և Ստալինի ղեկավարությամբ բազմակողմանի քաղաքական ու կազմակերպական աշխատանք կատարեց բանվոր դասակարգի և ռևոլյուցիոն գյուղացիության ուժերը մոբիլիզացնելու՝ Ռուսաստանում ցարիզմի ու իմպերիալիզմի տապալման, պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու համար պայքարելու նպատակով։

Ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին Ստալինը եռանդուն գործունեություն ծավալեց պարտիան և մասսայական բանվորական շարժումը ղեկավարելու համար։ Ստալինը ղեկավարում էր «Զվեզդա» և «Պրավդա» թերթերը, չորրորդ Պետական դումայի ընտրությունների կամպանիան։

Լենինի և Ստալինի միջև այդ ժամանակաշրջանում է՛լ ավելի սերտ կապ է հաստատվում։ Լենինը լիովին հավանություն է տալիս Ստալինի գործունեությանը, նրա ելույթներին, նրա հոդվածներին։ 1912 թվի վերջին Ստալինը երկու անգամ ժամանում է Կրակով Լենինի մոտ՝ պարտիական աշխատողների հետ տեղի ունեցող Կենտկոմի խորհրդակցությանը մասնակցելու համար։ 1913 թվի հունվարին Ստալինը գրեց իր «Մարքսիզմը և ազգային հարցը» աշխատությունը, որի մեջ մշակեց ազգային հարցի բոլշևիկյան թեորիան և ծրագիրը։ Ազգային հարցի վերաբերյալ մարքսիստական երկերի մեջ Լենինը առաջին տեղն էր տալիս Ստալինի աշխատությանը։

Ցարական իշխանությունները կատաղի կերպով հալածում էին ընկեր Ստալինին։ 1902 թվից մինչև 1913 թիվը եղած ժամանակամիջոցում Ստալինը բանտարկվել է 7 անգամ, աքսորվել է 6 անգամ, աքսորից փախել է 5 անգամ։ Աքսորավայրերում գտնվելու ժամանակ ընկեր Ստալինը չի դադարեցնում ռևոլյուցիոն աշխատանքը։ Պատերազմի ժամանակաշրջանում, գտնվելով Տուրուխանյան աքսորում, նա հաստատում

կերպով կանգնում է լենինյան ինտերնացիոնալիստական դիրքում՝ պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում։ Վերջին, առավել երկարատև, Տուրուխանյան աքսորից ընկեր Ստալինին ազատեց 1917 թվի Փետրվարյան ռևոլյուցիան։

Փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո պատմական նոր իրադրության մեջ Ստալինը ղեկավարում է Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի գործունեությունը, «Պրավդա» թերթը։ Լենինի Ռուսաստան վերադառնալուց հետո Ստալինը վճռականորեն հանդես է գալիս ի պաշտպանություն լենինյան Ապրիլյան թեզիսների և Լենինի հետ միասին ղեկավարում է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլյուցիայի անցնելու համար պարտիայի մղած պայքարը։

1917 թվի մայիսին հաստատվում է Կենտկոմի Քաղբյուրոն։ Ընկեր Ստալինը ընտրվում է Քաղբյուրոյի անդամ։ 1917 թվի փոթորկալից օրերին, Ստալինը, աշխատելով անմիջական մոտիկությամբ Լենինի հետ, կանգնում է պարտիայի ղեկավարման ամբողջ գործունեության կենտրոնում։ Հուլիսյան օրերից հետո, երբ Լենինը գտնվում էր ընդհատակում, Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Կենտրոնական օրգանը։ Ստալինը փրկեց Լենինի թանկագին կյանքը, վճռաբար հանդես գալով դավաճաններ Կամենևի, Ռիկովի, Տրոցկու այն առաջարկի դեմ, որ Լենինը հանձնվի հակառևոլյուցիոն ժամանակավոր կառավարության դատաստանին։ Թաքնելով իր ուսուցչին և բարեկամին խորը ընդհատակում, Ստալինը սերտ կապ էր պահպանում նրա հետ։ Նա երկու անգամ այցելել է Լենինին Ռազլիվում։

Ստալինը անմիջականորեն ղեկավարում էր բոլշևիկյան պարտիայի վեցերորդ համագումարի աշխատանքը։ Համագումարում՝ իր զեկուցումներում ու ելույթներում, Ստալինը վճռական հակահարված տվեց տրոցկիստներին, որոնք հանդես էին գալիս սոցիալիստական



ռևոլյուցիայի վերաբերյալ պարտիայի գծի դեմ։ Ստալինը մարգարեաբար ասել է՝

«Բացառված չէ այն հնարավորությունը, որ հենց Ռուսաստանը կհանդիսանա սոցիալիզմի ուղին հարթող երկիրը... Պետք է դեն շպրտել այն հնացած պատկերացումը, թե միայն Եվրոպան կարող է ուղի մատնանշել մեզ։ Գոյություն ունի դոգմատիկ մարքսիզմ և ստեղծագործական մարքսիզմ։ Ես կանգնած եմ վերջինիս հողի վրա» (Երկեր, հատ. 3, էջ 212—213)։

Պատմությունը հաստատեց ընկեր Ստալինի հանճարեղ կանխատեսումը։

Վեցերորդ համագումարը միավորվեց Ստալինի շուրջը, որը պաշտպանում էր Լենինի ուսմունքը մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին։ Համագումարը պարտիային նպատակադրեց դեպի զինված ապստամբություն, սոցիալիստական ռևոլյուցիա, դեպի պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։

Լենինը և Ստալինը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ոգեշնչողներն ու կազմակերպողներն են։ Ստալինը գլխավորեց ապստամբությունը ղեկավարող պարտիական կենտրոնը։

Լիակատար հաջողությամբ պսակվեց բոլշևիկյան պարտիայի և նրա մեծ առաջնորդներ Լենինի ու Ստալինի վիթխարի աշխատանքը՝ բանվոր դասակարգի մեջ, Սովետներում մեծամասնություն նվաճելու ուղղությամբ, միլիոնավոր աշխատավոր գյուղացիներին սոցիալիստական ռևոլյուցիայի կողմը ներգրավելու, զինված ապստամբություն նախապատրաստելու ուղղությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան տապալեց բուրժուազիայի տիրապետությունը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրան։ Դրանով իսկ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բաց արեց նոր դարագլուխ՝ պրոլետարական ռևոլյուցիաների դարագլուխը։ Դա նշանակում էր արմատական շրջադարձ մարդկության հա-

մաշխարհային պատմության մեջ, շրջադարձ հին, կապիտալիստական աշխարհից դեպի նոր, սոցիալիստական աշխարհը։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո, բոլշևիկյան պարտիայի և բանվոր դասակարգի առջև ծառացան բանվորների և գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետություն կառուցելու և պաշտպանելու խնդիրները։

Սովետական իշխանություն հաստատվելու առաջին իսկ օրերից, Լենինի մերձավորագույն զինակից Ստալինը վիթխարի աշխատանք էր կատարում սովետական հասարակական և պետական կարգը ամրապնդելու ուղղությամբ։ Ստալինը ընտրվեց Ժողովրդական Կոմիսարների Սովետի կազմում և մինչև 1923 թիվը գլխավորում էր Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսարիատը։ Ստալինը ղեկավարում էր սովետական ազգային ռեսպուբլիկաների և մարզերի շինարարությունը։ Լենինը բարձր գնահատեց Ստալինի գործունեությունը, որպես պարտիայի և սովետական պետության ազգային քաղաքականության ղեկավարի, որին ազգերի ամեն մի ներկայացուցիչ կարող էր դիմել իր հարցերը լուծելու համար։ Լենինը նշում էր, որ այդ պոստի համար չկա մի այլ թեկնածու, բացի ընկեր Ստալինից։

1919 թվի մարտից մինչև 1922 թվի ապրիլ ամիսը Ստալինը Պետական վերահսկողության ժողովրդական կոմիսար էր։ Այդ կոմիսարիատը հետագայում վերակազմվելով դարձավ Բանվորա-գյուղացիական տեսչություն։ Ստալինը մեծ աշխատանք կատարեց սովետական պետական ապարատը ամրապնդելու, այդ ապարատը բանվորների և գյուղացիների մասսաներին մոտեցնելու ուղղությամբ։ Լենինը շեշտում էր ամենահեղինակավոր պետական ղեկավար ընկեր Ստալինի գործունեության նաև այդ բնագավառի հսկայական նշանակությունը։

Ընկեր Ստալինը քացառիկ դեր է խաղացել սոցիա-



լիստական Հայրենիքի պաշտպանության գործում՝ օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի շրջանում, երբ ռազմաճակատների կրակե օղակը բոլոր կողմերից սեղմում էր մեր երկիրը։ Ստալինը Լենինի տեղակալն էր Պաշտպանության Խորհրդում, կարևորագույն ստրատեգիական պլանների ստեղծողը, վճռական մարտական գործողությունների ղեկավարը։ Ցարիցինի և Պերմի տակ, Պետրոգրադի տակ և Դենիկինի դեմ, արևմուտքում պանական Լեհաստանի դեմ և հարավում Վրանգելի դեմ— ամենուրեք Ստալինի երկաթակուռ կամքը և ստրատեգիական հանճարը ապահովում էին ռևոլյուցիայի հաղթանակը։ Ստալինի անվան հետ են կապված Կարմիր Բանակի ամենափառապանծ հաղթանակները։

Քաղաքացիական պատերազմի բոլոր տարիները անցան Լենինի և Ստալինի սերտ համագործակցության նշանաբանով։ Լենինի հետ միասին, Ստալինը կառուցում և ամրապնդում էր Կարմիր Բանակը։ Լենինի հանձնարարությամբ Ստալինը մշակում էր սովետական առաջավոր ռազմական գիտության հիմունքները, այն գիտության, որն անընդհատ զարգանալով և հարստանալով ապահովեց սովետական ժողովրդի հաղթանակը քաղաքացիական պատերազմի և ինտերվենցիայի տարիներին, ապահովեց համաշխարհային-պատմական հաղթանակը Հայրենական Մեծ պատերազմում։

Ինտերվենտների և սպիտակ-գվարդիականների դեմ մղված հաղթական պատերազմը ավարտվելուց հետո Ստալինը, Լենինի հետ միասին, ղեկավարում էր տնտեսական խաղաղ շինարարությունը և գործադրում էր բոլոր միջոցները սովետական պետությունն ամրապնդելու համար։ Ստալինը պարտիայի բոլոր թշնամիների դեմ մղվող պայքարում հետևողականորեն պաշտպանում էր լենինյան գիծը, կազմակերպորեն ղեկավարում պայքարը հակալենինյան խմբավորումների դեմ պրոֆմիութենական դիսկուսիայի ժամանակաշրջանում, պարտիան համախմբում էր լենինյան պլատֆորմի շուրջը, որն

արժանացել էր պարտիայի 10-րդ համագումարի հավանությանը։

Նոր տնտեսական քաղաքականության անցնելու վերաբերյալ պարտիայի 10-րդ համագումարի պատմական որոշումն ապահովում էր բանվոր դասակարգի և գյուղացիության ամուր դաշինքը սոցիալիզմի կառուցման համար։ Նույն այդ խնդրին էր ծառայում նաև համագումարի որոշումն ազգային հարցի վերաբերյալ։ «Ազգային հարցում պարտիայի հերթական խնդիրների մասին» զեկուցման մեջ Ստալինը ձևակերպեց հիմնական գործնական խնդիրը՝ վերացնել անցյալի ծանր ժառանգությունը, անցյալում ճնշված ժողովուրդների տնտեսական-քաղաքական և կուլտուրական հետամնացությունը, օգնել նրանց այդ տեսակետից հասնելու կենտրոնական Ռուսաստանին։ Ստալինը պարտիային կոչ արեց վճռական պայքար մղելու ազգային հարցում եղած թեքումների՝ վելիկոռուսական շովինիզմի դեմ, որպես գլխավոր վտանգի, և տեղական բուրժուական նացիոնալիզմի դեմ, որոնք արգելակում էին մեր երկրի ժողովուրդներին համախմբելու գործը։

Ստալինը հսկայական աշխատանք կատարեց սովետական ռեսպուբլիկաները մեկ միութենական պետության՝ ՍՍՌՄ-ի մեջ միավորելու ուղղությամբ։ ՍՍՌՄ-ի կազմակերպումը շրջադարձային մոմենտ հանդիսացավ մեր երկրի ժողովուրդների պատմության մեջ, խոշոր ուղենիշ՝ սովետական իշխանության կյանքում և նրա ամրապնդման մեջ։ Սովետական Միությունը զարգացավ ու դարձավ միջազգային լուրջ ուժ, ընդունակ ներգործելու միջազգային իրադրության վրա և փոխելու այն՝ հօգուտ աշխատավորների շահերի։

Ստալինը վայելել է և վայելում է ամբողջ պարտիայի և աշխատավոր ժողովրդի անսահման վստահությունն ու սերը։ 1922 թվի ապրիլի 3-ին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը, Լենինի առաջարկով, Ստալինին ընտրեց Կենտկոմի Գլխավոր Քարտուղար։ Այդ ժամանակվանից ի վեր Ի. Վ. Ստալինն անփոփոխ կերպով աշխատում է այդ պոստում։



1924 թվի հունվարի 21-ին մեծ վիշտ վիճակվեց բոլշևիկյան պարտիային և սովետական ժողովրդին՝ Մոսկվայի մոտ, Գորկայում վախճանվեց Լենինը, բոլշևիկների պարտիայի առաջնորդն ու հիմնադիրը, ամբողջ աշխարհի աշխատավորների առաջնորդը։

Լենինի դրոշը, պարտիայի դրոշը բարձր պահեց ու առաջ տարավ Լենինի նշանավոր աշակերտ և զինակից, բոլշևիկյան պարտիայի և աշխատավոր ժողովրդի լավագույն զավակ, Լենինի արժանավոր հաջորդ և նրա գործի մեծ շարունակող ընկեր Ստալինը։

## II. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԼԵՆԻՆԻ ԱՆՄԱՀ ԳՈՐԾԻ ՄԵԾ ՇԱՐՈՒՆԱԿՈՂԸ, ՍՍՌՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՈԳԵՇՆՉՈՂՆ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

Սգո օրերին Սովետների երկրորդ համագումարում ընկեր Ստալինը բոլշևիկյան պարտիայի անունից ուսուցիչ և առաջնորդ Վ. Ի. Լենինին տվեց պատմական երդում, որը կապրի դարեդար. բարձր պահել և մաքուր պահպանել պարտիայի անդամի մեծ կոչումը. աչքի լույսի պես պահպանել մեր պարտիայի միասնությունը. պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան. բոլոր ուժերով ամրապնդել բանվորների ու գյուղացիների դաշինքը. ամրապնդել մեր երկրի ժողովուրդների եղբայրական միասնությունը, ամրապնդել և ընդլայնել Ռեսպուբլիկաների միությունը. ամրապնդել մեր Սովետական Բանակը և Սովետական Նավատորմը. ամրապնդել և ընդլայնել ամբողջ աշխարհի աշխատավորների միությունը։

Լենինի մահվանից հետո անցած բոլոր տարիների ընթացքում բոլշևիկյան պարտիան այդ երդումը պատվով է կատարում, ընթանում է լենինյան ուղիով, պայքարում և հաղթանակում է լենինիզմի դրոշով, Լենինի գործի մեծ շարունակող Ստալինի ղեկավարությամբ։

Ընկեր Ստալինը լենինյան մեծ ուսմունքը պաշտպանեց սոցիալիզմի թշնամիների բազմաթիվ գրոհնե-

ներից և այն էլ ավելի զարգացրեց։ «Լենինիզմի հիմունքների մասին» ընկեր Ստալինի կլասիկ աշխատությունը, որը լույս տեսավ 1924 թվին, բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ լենինիզմի պաշտպանության, հիմնավորման և զարգացման գործում, տրոցկիզմի գաղափարական ջախջախման գործում։ Այդ աշխատության մեջ տրված է լենինիզմի հմուտ շարադրանքը և խոր հիմնավորումը, որպես իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դարաշրջանի մարքսիզմի, ցույց է տրված այն նորը, ինչ Լենինը մտցրել է մարքսիստական թեորիայի զարգացման գործում։ Լենինյան ժառանգության ամբողջ գաղափարական հարստությունը ընկեր Ստալինը հավաքել և դիտել է պատմական նոր դարաշրջանի տեսանկյունով։ Դա նշանակում էր առաջընթաց հսկայական քայլ մարքսիզմ-լենինիզմի զարգացման գործում։ «Լենինիզմի հիմունքների մասին» Ստալինի աշխատությունը այն ժամանակ զինեց, այժմ ևս զինում է աշխարհի բոլոր կոմունիստներին մարքսիստական-լենինյան թեորիայի սուր զենքով։

Մեծ Լենինը մեզնից հեռացավ այն ժամանակ, երբ սովետական երկիրը կանգնած էր ներքին և միջազգային լուրջ դժվարությունների առաջ։ Կապիտալիզմը Արևմտյան Եվրոպայում, դիմանալով ռևոլյուցիոն շարժման առաջին գրոհին, թևակոխեց ժամանակավոր մասնակի կայունացման ժամանակաշրջանը և փորձեց նոր ճնշում գործադրել ՍՍՌՄ-ի վրա։ Մեր երկրում նոր տնտեսական քաղաքականության հիման վրա, որի նպատակն էր ապահովել սոցիալիզմի հաղթանակը, պայքար ծավալվեց տնտեսության կապիտալիստական և սոցիալիստական տարրերի միջև։ «Ով ումի» հարցը դեռ չէր լուծված։

Երբ երկիրը ավարտում էր ժողովրդական տնտեսության վերականգնումը, ամբողջ սրությամբ ծառացավ հետագա շինարարության ուղիների, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության հարցը։ Առանց այդ հարցին ուղղակի և պարզ պատասխան



տալու շինարարության ամբողջ գործնական աշխատանքը կլիներ աշխատանք առանց հեռանկարների, կուրորեն իզուր կատարվող աշխատանք։ Լենինիզմի անարգ թշնամիներ՝ տրոցկիստները, զինովևականները փորձում էին թունավորել պարտիային, բանվոր դասակարգին, սոցիալիզմի հաղթանակի հնարավորության նկատմամբ մենշևիկյան անհավատության թույնով, գործը տանում էին դեպի կապիտալիզմի վերականգնումը։ Այս ամենաբարդ իրադրության մեջ հարկավոր էին Ի. Վ. Ստալինի հանճարն ու կամքը՝ լենինյան պատգամները պաշտպանելու համար, սոցիալիստական հասարակություն կառուցելու կոնկրետ ուղիներն ու մեթոդները որոշելու, պարտիան և երկիրը դեպի սոցիալիզմի հաղթանակը տանելու համար։

Ընկեր Ստալինի մեծագույն ծառայությունն է հանդիսանում մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան ուսմունքի պաշտպանությունը, հիմնավորումն ու զարգացումը։ Այդ ուսմունքի կարևորագույն դրույթների մշակմանն է նվիրված ընկեր Ստալինի «Հոկտեմբերյան ռևոլյուցիան և ռուսական կոմունիստների տակտիկան» հայտնի աշխատությունը, որը գրվել է 1924 թվին։ Մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան-ստալինյան ուսմունքի թեորիական դրույթների անգնահատելի նշանակությունն այն էր, որ նրանք տալիս էին սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարի պարզ հեռանկարը, պարտիային և բանվոր դասակարգին զինում էին սոցիալիստական շինարարության նկատմամբ հաղթանակի անխորտակելի հավատով։ Այդ դրույթները դրվեցին պարտիայի 14-րդ կոնֆերանսի (1925 թվի ապրիլ) պատմական որոշումների հիմքում, որպես պարտիայի օրենք, որը պարտադիր է նրա բոլոր անդամների համար։

Ելնելով Լենինի ցուցումներից, Ստալինը մշակեց մեր երկրում սոցիալիստական հասարակություն կառուցելու հանճարեղ պլանը։ Այդ պլանի կարևորագույն

օղակներն էին հանդիսանում երկրի սոցիալիստական ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը։

Ընկեր Ստալինը հանդիսացավ ՍՍՌՄ սոցիալիստական ինդուստրացման ոգեշնչողը։ Երկրի սոցիալիստական ինդուստրացման գիծը ընկեր Ստալինը բնորոշեց 1925 թվին պարտիայի 14-րդ համագումարում։ Ընկեր Ստալինը մերկացրեց տրոցկիստական-զինովևյան «պլանների» դավաճանական էությունը, որոնց գլխավոր նպատակն էր իմպերիալիստական գիշատիչների կողմից մեր երկրի ստրկացումը, նրա վերածումը կապիտալիստական աշխարհի ագրարային կցորդի, որն անօգնական և անզեն էր կապիտալիստական շրջապատման հանդեպ։

«Լենինիզմի հարցերի շուրջը» կլասիկ աշխատության մեջ, որը լույս տեսավ 1926 թվին, ընկեր Ստալինը գաղափարապես ջախջախեց Զինովևի ու Կամենևի լիկվիդատորական, կապիտուլյանտական դիրքը և թեորիապես հիմնավորեց երկրի սոցիալիստական ինդուստրացման և սոցիալիստական հասարակություն կառուցելու պարտիայի 14-րդ համագումարի գլխավոր գիծը։

Պարտիայի թշնամիների դեմ մղած պայքարում, Լենինի մահից հետո, ստեղծվեց մեր պարտիայի այն ղեկավար կորիզը, որը պարտիային համախմբեց Լենինի պատգամների շուրջը և սովետական ժողովրդին դուրս բերեց երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման, սոցիալիստական ծավալուն շինարարության լայն ուղին։ Այդ կորիզի ղեկավարը և պարտիայի ու պետության առաջատար ուժը հանդիսացավ ընկեր Ստալինը։

Ի. Վ. Ստալինը մշակեց երկրի սոցիալիստական ինդուստրացման, դրա ուղիների, մեթոդների, ներքին սոցիալիստական կուտակումների աղբյուրների վերաբերյալ կարևորագույն դրույթները։ Ընկեր Ստալինն ինդուստրացման ամբողջ գործի ղեկավարն է, արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծման նախաձեռնողը,



մեր երկրում ածխա-մետալուրգիական երկրորդ բազայի
ստեղծման, բոլոր խոշորագույն սոցիալիստական կա-
ռուցումների ոգեշնչողն ու կազմակերպիչը։ Ընկեր
Ստալինի ցուցումները ծանր ինդուստրիայի և նրա մի-
ջուկը կազմող մեքենաշինության զարգացման, ին-
դուստրացման բարձր տեմպերի, աշխատանքի արտա-
դրողականության բարձրացման, խնայողության ռեժի-
մի, ինքնարժեքի իջեցման անհրաժեշտության մասին և
այլն առաջ բերեցին արտադրական հզոր վերելք բան-
վոր դասակարգի լայն մասսաների մեջ և դարձան մի-
լիոնավոր աշխատավորների մարտական ծրագիրը
Երկրում լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցու-
թյունը, դառնալով սոցիալիզմի կառուցման հզոր շար-
ժիչը։

Ստալինյան հնգամյակների տարիներին սովետա-
կան ժողովուրդը, պարտիայի ղեկավարությամբ
Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ ստեղծեց առաջավոր
տեխնիկայով հագեցված առաջնակարգ արդյունաբերու-
թյուն։ Սոցիալիստական ինդուստրիայի մեծ դերությունն
ընդունակ հանդիսացավ ջախջախել ֆաշիստական Գեր
մանիային, որը զավթել էր Եվրոպայի գրեթե ամբող
արդյունաբերությունը։

Մեր սոցիալիստական արդյունաբերության հզորու
թյունը նոր ուժով երևան է գալիս նաև այժմ, հետպա
տերազմյան ժամանակաշրջանում, ժողովրդական տնտե
սության վերականգնման ու զարգացման բարձր տեմ
պերի մեջ։ Այդ բոլոր համաշխարհային-պատմակա
հաղթանակները երկրի ինդուստրացման Ստալինյա
հանճարեղ պլանի հաղթանակներն են։

Ընկեր Ստալինը կոլխոզային կարգերի կերտողն
Հենվելով Լենինի այն ցուցումի վրա, որ մանր տնտե
սությունը չի կարող կարիքից դուրս գալ, ընկ
Ստալինը 1927 թվին պարտիայի 15-րդ համագումա
րում առաջ քաշեց գյուղատնտեսության կոլեկտիվաց
ման, գյուղացիական մանր տնտեսություններից հողա
գործության մեջ մեքենայական տեխնիկա և ագրոն

միակ ճիշտ ուղին կիրառելու ընդհանուր հանրային կոլեկտիվ խոշոր տնտեսություններ ստեղծելու խնդիրը։

Ընկեր Ստալինը բազմակողմանիորեն մշակեց և կենսագործեց գյուղատնտեսության կոլեկտիվացման թեորիան։ Մարքսիստական-լենինյան թեորիայի մեջ նշանակալից ավանդ հանդիսացավ մարքսիստ-ագրարագետների կոնֆերանսում 1929 թվի դեկտեմբերին Ի. Վ. Ստալինի արտասանած ճառը։ Այդ ճառում ընկեր Ստալինը տվեց կոլխոզների, որպես տնտեսության սոցիալիստական ձևի, բնության խոր վերլուծությունը, հիմնավորեց անցումը գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման և այդ հիման վրա կուլակության, որպես դասակարգի վերացման քաղաքականությանը։ Ընկեր Ստալինը ջախջախեց «ինքնահոսի» աջ օպորտունիստական թեորիան սոցիալիստական շինարարության մեջ։

Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ պարտիան ու կառավարությունը ամենաուշադիր նախապատրաստություն տեսան գյուղատնտեսության կոլեկտիվացման անցնելու համար։ Գյուղում ստեղծվում էին արտադրողական նոր ուժեր, արմատավորվում էր նոր տեխնիկա՝ տրակտորներ, կոմբայններ, սկսեցին երևան գալ տրակտորիստներ, կոմբայնավարներ, մեխանիկներ։

Մերկացնելով աջ կապիտուլյանտներին, որպես կուլակության գործակալների ու պաշտպանների, ընկեր Ստալինը աջերի դեմ մղած պայքարում համախմբեց ամբողջ պարտիան և նրան գրոհի տարավ կապիտալիստական շահագործման վերջին հենարանի՝ կուլակության դեմ։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ բոլշևիկյան պարտիան, սովետական պետությունը, գյուղացիության լայն մասսաների աջակցությամբ, անցկացրին գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացում, կուլակության, որպես դասակարգի, վերացում։ Դա ռևոլյուցիոն ամենախոր հեղաշրջումն էր, որն իր հետևանքներով



համազոր էր 1917 թվի հոկտեմբերին տեղի ունեցած ռևոլյուցիոն հեղաշրջմանը։

Գյուղում կոլխոզային կարգի հաստատմամբ գյուղացիությունն ընդմիշտ ազատագրվեց կուլակային ստրկությունից և աղքատությունից։ Սովետական ժողովրդի, բոլշևիկյան պարտիայի, Մեծ Ստալինի ջանքերով մեր երկրում ստեղծվել է ամենամեքենայացված, ամենախոշոր, ամենաարտադրողական սոցիալիստական գյուղատնտեսությունը։

Երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունն իրագործվում էր դասակարգային կատաղի պայքարի պայմաններում։ Ընկեր Ստալինը սրթուն կերպով հետևում էր դասակարգային թշնամու մանևրներին, նախատեսավ նրա գործողությունները, բացահայտեց դասակարգային թշնամու պայքարի նոր մեթոդները և պարտիային կոչ արեց բարձրացնել զգոնությունը, ուժեղացնել սոցիալիստական սեփականության՝ սովետական կարգի հիմքի պահպանությունը, ամեն կերպ ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական աշխարհում մոլեգնում էր տնտեսական ճգնաժամը, ընկեր Ստալինը 17 րդ համագումարում (1934 թ.) ՀամԿ(բ)Պ Կենտկոմի իր հաշվետու զեկուցման մեջ հանրագումարի բերեց ՍՍՌՄ-ում սոցիալիզմի պատմական հաղթանակները։ Հաղթեց երկրի ինդուստրացման քաղաքականությունը, գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունը։ Հաղթեց մեկ երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության ուսմունքը։ Սոցիալիստական տնտեսաձևը դարձավ անբաժանորեն իշխող ուժ։

Ս. Մ. Կիրովը արտահայտեց սովետական մարդկանց ընդհանուր զգացմունքը, երբ 1934 թվին ընկեր Ստալինի մասին, որպես սոցիալիզմի բոլոր հաղթանակների մեծ ոգեշնչողի ու կազմակերպչի մասին, ասաց.

«Այդ մարդու հզոր կամքը, կազմակերպչական

տաղանդը պարտիայի համար ապահովում է սոցիալիզմի հաղթական շինարարության հետ կապված պատմական մեծ շրջադարձերի ժամանակին կատարումը»։

Ստալինյան հնգամյակների իրագործման հետևանքով արմատապես փոխվեց մեր երկրի դեմքը։ Սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքը, որոնց պարտիան, Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ, ոգեշնչում և ուղղություն է տալիս դեպի սոցիալիզմի կառուցման մեծ նպատակները, վերափոխեց մեր երկիրը, այն դարձրեց ագրարայինից՝ ինդուստրիալ, մանր գյուղացիականից՝ ամենախոշոր առաջավոր սոցիալիստական հողագործության երկիր։ Երկրում կատարվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա, ստեղծվեց ժողովրդական սեփական ինտելիգենցիա։ Սոցիալիզմը ՍՍՌՄ-ում կառուցվեց։ Շահագործողական դասակարգերն ամբողջովին լիկվիդացվեցին։ Անհետացան գործազրկությունը, աղքատությունը, արմատապես բարելավվեց ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը, սովետական հայրենասիրությունը դարձան մեր հասարակության հզոր շարժիչ ուժերը։ Այդ համաշխարհային-պատմական հաղթանակներն ամրապնդվեցին Ի. Վ. Ստալինի մշակած և 1936 թվին Սովետների 8-րդ համագումարում ընդունված ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի մեջ։

Ընկեր Ստալինը ՍՍՌՄ Կոնստիտուցիայի ստեղծողն է։ ՍՍՌՄ ժողովուրդները այն սիրով անվանել են Ստալինյան Կոնստիտուցիա։ Այն, ինչի մասին հարյուրավոր տարիներ երազել են մարդկության լավագույն առաջավոր մտքերը, անխախտ օրենք է դարձրել Ստալինյան Կոնստիտուցիան՝ հաղթանակած սոցիալիզմի և ծավալուն սոցիալիստական դեմոկրատիայի կոնստիտուցիան։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան ամրապնդեց այն համաշխարհային-պատմական փաստը, որ ՍՍՌՄ-ն թևակոխել է զարգացման նոր շրջան, սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզ-



մից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը։ Ստալինյան Կոնստիտուցիան միջազգային հսկայական նշանակություն ունի։ Դա ամբողջ աշխարհի աշխատավորների դրոշն է, նրանց գործողությունների մարտական ծրագիրը խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար, դեմոկրատիայի, սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Պարտիան և սովետական պետությունն ընկեր Ստալինի ղեկավարությամբ ջախջախեցին ժողովրդի թշնամիների, հայրենիքի դավաճանների պիծակի բնը՝ տրոցկիստներին, զինովևականներին, բուխարինականներին, իմպերիալիստական հետախուզությունների նողկալի ծառաներին, որոնք կապիտալիզմը վերականգնելու համար դիմում էին լրտեսության, վնասարարության, տեռորի ու դիվերսիայի, հայրենիքին դավաճանելուն։ 1937 թվի մարտին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումում «Պարտիական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու մյուս երկերեսանիներին լիկվիդացնելու միջոցառումների մասին» Ի. Վ. Ստալինի զեկուցումը հանդիսացավ պարտիական և սովետական օրգանների հետագա ամրապնդման մարտական ծրագիրը, պարտիայի և սովետական ժողովրդի քաղաքական զգաստությունը բարձրացնելու միջոցառումների ծրագիրը։

Հաշվի առնելով մասսաների աճած ակտիվությունը և կապիտալիստական շրջապատման պայմաններում սոցիալիզմի հետագա շինարարության վիթխարի խնդիրները, Ի. Վ. Ստալինը մեր կադրերի առաջ ամենայն սրությամբ դրեց բոլշևիզմին տիրապետելու խնդիրը։ 1938 թվին «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց» գրքի լույս տեսնելը, որ գրել է ընկեր Ստալինը, կարևորագույն իրադարձություն հանդիսացավ բոլշևիկյան պարտիայի գաղափարական կյանքում։ Պարտիան ստացավ բոլշևիզմի նոր, հզոր գաղափարական զենք, մարքսիզմ-լենինիզմի բնագավառի հիմնական գիտելիքների իսկական հանրագիտարան։ Հենվելով մարդկու-

թյան պատմության ամբողջ փորձի վրա, բոլշևիկյան պարտիայի ամենահարուստ փորձի վրա, ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակության կառուցման փորձի վրա, ընկեր Ստալինը տվեց դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի հիմունքների հանճարեղ շարադրությունը, է՛լ ավելի զարգացրեց հասարակության մասին մարքսիստական-լենինյան գիտությունը։ Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի մասին ընկեր Ստալինի աշխատությունը, որ մտել է «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացի» մեջ, հանդիսանում է մարքսիստական-լենինյան փիլիսոփայական մտքի իսկական գագաթը։

Պարտիայի 18-րդ համագումարը (1939 թ.) հանդիսացավ ամբողջ պարտիայի դեռևս չտեսնված միասնության ու միաձուլության, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի շուրջը, հանճարեղ ուսուցիչ և առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը պարտիայի համախմբման հոյակապ ցույց։ Պարտիայի 18-րդ համագումարում Ի. Վ. Ստալինի տված զեկուցումը կոմունիզմի ծրագրային փաստաթուղթ է, կարևոր առաջընթաց քայլ՝ մարքսիստական-լենինյան թեորիայի զարգացման մեջ։ Ընկեր Ստալինը որոշեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ուղիները, նշեց ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդիրը՝ հասնել և անցնել կապիտալիստական գլխավոր երկրներից տնտեսական տեսակետից, այսինքն բնակչության մեկ շնչին հասնող արդյունաբերական արտադրանքի արտադրության տեսակետից։ Սոցիալիստական շինարարության հսկայական փորձն ընդհանրացնելու հիման վրա ընկեր Ստալինը ամբողջական, ավարտուն ուսմունք ստեղծեց սոցիալիստական պետության մասին, տվեց սոցիալիստական պետության զարգացման և իրադրության փոփոխման կապակցությամբ այդ պետության ֆունկցիաների փոփոխման խոր վերլուծությունը, հետևություն անելով կոմունիզմի ժամանակ պետությունը պահպանելու անհրաժեշտության մասին այն դեպքում, եթե պահպանվի կապիտալիստական շրջապատումը։



Ի. Վ. Ստալինն է՛լ ավելի զարգացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան թեորիան, կոնկրետացրեց մեկ երկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության թեորիան և հանգեց մեր երկրում կոմունիզմի կառուցման հնարավորության հետևության նաև այն դեպքում, եթե պահպանվի կապիտալիստական շրջապատումը։ Ստալինի այս հետևությունները հարստացրին լենինիզմը, բանվոր դասակարգին զինեցին գաղափարական նոր զենքով, մարքսիստական-լենինյան թեորիան հասցրին նոր, բարձր աստիճանի, պարտիային տվին կոմունիզմի հաղթանակի համար պայքարի մեծ հեռանկար։

Կենսագործելով ստալինյան նախագծումները, սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ վիթխարի թռիչք գործեց, որի օգնությամբ մեր հայրենիքը հետամնաց երկրից դարձավ առաջավոր։ Անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին իմպերիալիզմի ուժերի դեմ մղվող պատերազմում ակտիվ պաշտպանության համար։ Պարտիայի ղեկավարությամբ, մեծ Ստալինի գլխավորությամբ, սովետական ժողովուրդը հաստատ առաջ ընթացավ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ուղիով։

## III. ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԸ ՄԵՐ ԲՈԼՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՈԳԵՇՆՉՈՂՆ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

Հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը ընդհատեց սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքը։ Մեր հայրենիքի երբևիցե ապրած բոլոր պատերազմներից ամենադաժան ու ծանր Հայրենական Մեծ պատերազմի տարիներին առանձնապես վառ կերպով դրսևորվեցին Ի. Վ. Ստալինի հիանալի հատկությունները, որպես պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդի, սովետական պետության ղեկավարի, հանճարեղ ստրատեգի և զորավարի։ Ընկեր Ստալինի խորաթափանցությունն ու հեռատեսությունը, ստալինյան ան-

նկուն կամքը, ստալինյան իմաստուն ղեկավարությունը ապահովեցին թշնամու լիակատար ջախջախումը։

1941 թվի հուլիսի 3-ի պատմական ճառում ընկեր Ստալինը տվեց տեղի ունեցող իրադարձությունների խոր վերլուծությունը և բնորոշեց սկսված պատերազմի բնույթը որպես զավթողական, կողոպտչական գերմանական ֆաշիստների կողմից և որպես հայրենական, արդարացի պատերազմի Սովետական Միության կողմից։ Ընկեր Ստալինը սովետական բոլոր մարդկանց սրտերի մեջ վստահություն ներշնչեց, որ թշնամին կըկանգնեցվի, հետ կշպրտվի և կջախջախվի։ Սովետական մարդիկ հաստատուն կերպով հավատում էին իրենց ուժերին, իրենց առաջնորդ և զորավար ընկեր Ստալինի հանճարին։

Ի. Վ. Ստալինը մշակեց և կենսագործեց թշնամու ջախջախման ստրատեգիական հանճարեղ պլանը։ Սովետական զորքերը ակտիվ պաշտպանությամբ հյուծում էին հակառակորդին, ոչնչացնում նրա կենդանի ուժն ու տեխնիկան, ի չիք դարձնելով գերմանա-ֆաշիստական զորքերի ժամանակավոր առավելությունները։ Ընկեր Ստալինի առաջնորդությամբ սովետական Զինված Ուժերն անցան վճռական հակահարձակման։ Մոսկվայի մոտ հիտլերյան զորքերի ջախջախումը, որը հանդիսացավ երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական զորքերի առաջին խոշոր պարտությունը, ընդմիշտ հողմացրիվ արավ գերմանական բանակի անպարտելիության մասին հիտլերականների ստեղծած առասպելը, վառ կերպով ցույց տալով ստալինյան սովետական ստրատեգիայի գերազանցությունը թշնամու ստրատեգիայի նկատմամբ։

Պատերազմի ամբողջ ընթացքի համար վճռական նշանակություն ունեցավ Ստալինգրադի մոտ հիտլերյան զորքերի ջախջախումը, երբ Ի. Վ. Ստալինի ստրատեգիական հանճարեղ պլանով շրջապատվեց և լիովին ոչնչացվեց հսկայական քանակությամբ ռազմական տեխնիկայով հագեցված 300 հազարանոց ֆաշիստական բանակը։ Դա առավել աչքի ընկնող հաղթանակն էր մեծ



պատերազմների պատմության մեջ, ռազմական արվեստի պսակը, ստալինյան ստրատեգիայի ու տակտիկայի մեծագույն հաղթանակը։ Ստալինգրադը դարձավ սովետական ժողովրդի հերոսության ու արիության մեծ սիմվոլը, Սովետական Բանակի հզորության սիմվոլը։ Ստալինգրադը հանդիսացավ գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտը, պատերազմի ամբողջ ընթացքի մեջ մտցրեց արմատական բեկում, դրեց սովետական հողից թշնամու մասսայական վռնդման սկիզբը։

Կուրսկի մոտ տեղի ունեցած ճակատամարտը, որը հաստատեց ստալինյան հրամանատարության հեռատեսությունը, ամրապնդեց և զարգացրեց Ստալինգրադյան հաղթանակը։ Այդ հաղթանակը գերմանա-ֆաշիստական բանակին կանգնեցրեց կատաստրոֆայի առաջ և սկիզբ դրեց սովետական զորքերի նոր, հզոր հարձակմանը։

Պատերազմների պատմությունը չգիտե այնպիսի օրինակներ, երբ պատերազմի ընթացքում, որը սկզբում այնքան անբարենպաստ էր մեկ կողմի համար, այդպիսի վարպետությամբ բեկում առաջացվեր։

Պրոլետարական մեծ ստրատեգ Ի. Վ. Ստալինը իր կամքին ենթարկեց Հայրենական պատերազմի օրերին ծավալված վիթխարի ճակատամարտերի ընթացքը, Սովետական Բանակին հասցրեց համաշխարհային-պատմական հաղթանակներ։

Սովետա-գերմանական վիթխարի ռազմաճակատի ամբողջ տարածության վրա թշնամուն հասցված հզոր հարվածների շնորհիվ Սովետական Բանակը, Ի. Վ. Ստալինի ղեկավարությամբ, պատվով կատարեց իր պատմական միսիան՝ սովետական հողը մաքրեց հիտլերականներից, Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց գերմանա-ֆաշիստական լծից, ֆաշիստական գազանին վերջնականապես ջախջախեց նրա սեփական որջում, հաղթանակի դրոշը բարձրացնելով Բեռլինի վրա։ Հիտլերյան Գերմանիայից անմիջապես հետո սովետական զորքերը ստիպեցին անձնատուր լինել իմպերիալիստական Ճապոնիային։

Մեծ հաղթանակները հանդիսացան սովետական ստալինյան ռազմագիտության ակնառու հաղթանակը, որպես առաջավոր սոցիալիստական հասարակարգի գիտության, որպես թեորիական ռազմական մտքի զարգացման մեջ բարձրագույն աստիճանի։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Ի. Վ. Ստալինը զարգացրեց ու հարստացրեց սովետական ռազմագիտությունը և սովետական զորքերին սովորեցրեց թշնամուն հաղթելու արվեստը։ Հայրենական Մեծ պատերազմի ընթացքում Ի. Վ. Ստալինը ընտրեց, դաստիարակեց և պատասխանատու պոստերի առաջ քաշեց ռազմական նոր ղեկավար կադրեր, որոնք հմտորեն կենսագործում էին Գերագույն Գլխավոր Հրամանատարության հանճարեղ մտահղացումները։ Բանակում պարտիական կազմակերպությունները, ղեկավարվելով ընկեր Ստալինի ցուցումներով, սովետական ռազմիկների մեջ դաստիարակում էին անձնուրաց քաջություն, խիզախություն, անվեհերություն մեր Հայրենիքի թշնամիների դեմ մղվող պայքարում։ Ի. Վ. Ստալինը Սովետական Բանակը դարձրեց աշխարհում ամենաառաջավոր, ամենակոփված ու հզոր բանակը, մասսայական հերոսության բանակը։ Սովետական Բանակը գլխովին ջախջախեց գերմանական բանակին, որը դեռ 1945 թվի հունվարին սարսափ էր ազդում ամերիկյան ու անգլիական գեներալներին և նրանց բանակներին։

Ընկեր Ստալինը կազմակերպեց Հայրենական պատերազմում Սովետական Միության հաղթանակը, հաշվի առնելով պատերազմ վարելու ոչ միայն ռազմական, այլև տնտեսական ու բարոյա-քաղաքական գործոնները։ Պարտիան և Սովետական պետությունը, ընկեր Ստալինի գլխավորությամբ, մոբիլիզացրին սովետական երկրի բոլոր ուժերն ու միջոցները՝ հաղթանակի հասնելու համար և ռազմաճակատին օգնելու համար անձնուրաց աշխատանքի բարձրացրին սովետական թիկունքի միլիոնավոր աշխատավորներին։ Լենինի-Ստալինի պարտիան պատերազմի օրերին իրեն ցուցաբերեց որպես



համաժողովրդական պայքարի ոգեշնչող ու կազմակերպիչ թշնամու դեմ հաղթանակ տանելու համար։ Ամենուրեք պարտիական կազմակերպությունները մտցնում էին կազմակերպող սկզբունք։ Պարտիան պատերազմի օրերին է՛լ ավելի հարազատ դարձավ և մոտեցավ ժողովրդին։ Ի. Վ. Ստալինի կողմից գլխավորվող Պաշտպանության Պետական Կոմիտեի ղեկավարությամբ կատարվեց հսկայական տնտեսական-կազմակերպչական աշխատանք՝ երկրի ժողովրդական տնտեսությունը ռազմաճակատի կարիքների համար վերակառուցելու, պատմության մեջ դեռ չտեսնված մասշտաբներով ձեռնարկությունները դեպի արևելք էվակուացնելու և նոր ձեռնարկություններ կառուցելու գծով։

Այդ աշխատանքի շնորհիվ Սովետական Միությունը ընկեր Ստալինի ղեկավարությամբ ստեղծեց կարգավորված և արագ կերպով աճող ռազմական տնտեսություն։ Պատերազմի վերջում սովետական արդյունաբերությունը թողարկում էր մի քանի անգամ ավելի սպառազինություն, քան պատերազմի սկզբում։ Ի. Վ. Ստալինը բանակում արմատավորում էր մարտական տեխնիկայի նոր, հետզհետե ավելի կատարյալ տեսակներ։ Սպառազինության թե՛ քանակի և թե՛ որակի տեսակետից ՍՍՌՄ մեծ չափով գերազանցեց Գերմանիային։ Միաժամանակ սոցիալիստական գյուղատնտեսությունն անխափան կերպով անհրաժեշտ մթերքներ էր մատակարարում բանակին և երկրին։ Սովետական Միությունը ո՛չ միայն ռազմական, այլև տնտեսական հաղթանակ ձեռք բերեց հիտլերյան Գերմանիայի և նրա գործակիցների նկատմամբ։

Ընկեր Ստալինը հանդիսացավ պարտիզանական հզոր շարժման կազմակերպիչն ու ոգեշնչողը։ Հետևելով ընկեր Ստալինի կոչին, թշնամու թիկունքում մնացած սովետական մարդիկ ֆաշիստների և նրանց գործակիցների համար ստեղծում էին անտանելի պայմաններ, նրանց հետապնդում էին ամեն մի քայլափոխում, վիժեցնում նրանց միջոցառումները։ Պարտիզանական

փոքրիկ ջոկատներից աճում էին խոշոր միավորումներ։ Ընկեր Ստալինն անց էր կացնում պարտիզանական ջոկատների ղեկավարների խորհրդակցություններ, նրանց խորհուրդներ ու ցուցումներ էր տալիս, նրանց ուղարկելով թշնամու թիկունքը հեռավոր մարտարշավների։

Ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունը ո՛չ միայն վիժեցրեց ՍՍՌՄ-ի դեմ ընդհանուր կոալիցիա ստեղծելու գերմանական ֆաշիստների փորձերը, այլև ապահովեց ֆաշիստական Գերմանիայի մեկուսացումը։ Ինչպես նախագուշակել էր ընկեր Ստալինը, իր հայրենիքի ազատության համար սովետական ժողովրդի պատերազմը միաձուլվեց իրենց անկախության ու դեմոկրատական ազատությունների համար մյուս երկրների ժողովուրդների մղած պայքարի հետ։ Պատերազմի ընթացքում ստեղծվեց Սովետական Միության կողմից գլխավորվող հակահիտլերյան կոալիցիա։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ Սովետական Միությունը համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող հաղթանակ ձեռք բերեց։ 1941—1945 թվերի Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովուրդը փրկեց Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, ամրապնդեց Արևմուտքում ու Արևելքում սովետական սահմանների անվտանգությունը, ապահովեց մեր երկրում կոմունիստական հասարակության հետագա խաղաղ շինարարության հնարավորությունը։ Սովետական Միությունը Եվրոպայի ժողովուրդներին ազատություն բերեց ֆաշիստական ստրկությունից, եվրոպական քաղաքակրթությունը փրկեց կործանումից։

Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմում հաղթանակ տարան սովետական հասարակական ու պետական կարգը, սովետական Զինված Ուժերը, հաղթանակ տարավ Լենինի—Ստալինի պարտիայի իմաստուն քաղաքականությունը։ Բոլշևիկյան պարտիան, Ստալինի հանճարը միացրին և դեպի ընդհա-



նուր նպատակը՝ թշնամու ջախջախումն ուղղեցին ժողովրդի բոլոր ուժերը։

Պաշտպանության Պետական Կոմիտեի նախագահ, Գերագույն Գլխավոր Հրամանատար, պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդ Ի. Վ. Ստալինի ելույթներն ու հրամանները ոգեշնչում և ուղղություն էին տալիս գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված համաժողովրդական պայքարին, ցույց էին տալիս հաղթանակի ուղին։ «Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին» Ի. Վ. Ստալինի գիրքը մտավ մարքսիստական-լենինյան թեորիայի գանձարանի մեջ։ Նա պարտիային և սովետական ժողովրդին զինեց սովետական հասարակարգի պատմական անպարտելիության խոր ըմբռնմամբ։

Ընդհանրացնելով սոցիալիստական շինարարության ու պատերազմի փորձը, ընկեր Ստալինը ցույց տվեց, որ սովետական սոցիալիստական հասարակական ու պետական կարգը հանդիսացավ հասարակական ու պետական կազմակերպության լավագույն ձևը՝ ամեն մի այլ, ոչ սովետական կարգի համեմատությամբ։ Սովետական Միության ուժի աղբյուրներից մեկը հանդիսացավ մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, որը ստեղծվել է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կայուն հիմքի վրա և կոփվել է գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված ընդհանուր պայքարում։ Ռասաների ու ազգերի իրավահավասարության սովետական իդեոլոգիան, ժողովուրդների բարեկամության իդեոլոգիան հաղթանակ տարան գազանային նացիոնալիզմի ու ռասայական ատելության հիտլերյան իդեոլոգիայի դեմ։ Թիկունքում սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների և ռազմաճակատում ռազմական սխրագործությունների աղբյուրը, ինչպես նշել է ընկեր Ստալինը, հանդիսացավ կենսատու սովետական հայրենասիրությունը, որի հիմքում գտնվում է ժողովրդի խորին նվիրվածությունը սովետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխա-

տավորների եղբայրական համագործակցությունը, Սովետական Միության բոլոր աշխատավորների ազգային տրադիցիաների ու կենսական ընդհանուր շահերի ներդաշնակ զուգորդումը։

Սովետական ժողովրդին հերոսական պայքարի հանելով ֆաշիստական զավթիչների դեմ, ընկեր Ստալինը պաշտպանեց սովետական Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, մեր երկիրը հասցրեց Մեծ հաղթանակին և աշխարհի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացման սպառնալիքից։ Դրանումն է Ի. Վ. Ստալինի համաշխարհային-պատմական ծառայությունն ամբողջ սովետական ժողովրդի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության առաջ։

## IV. Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՏԱՎՈՐ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՆՈՐԴՆ Է ԵՎ ՈՒՍՈՒՑԻՉԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՈՒ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Զարգացնելով սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան թեորիան, ընկեր Ստալինը սահմանեց պատմական զարգացման օրինաչափությունները նոր դարաշրջանում, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դարաշրջանում, երբ աշխարհը բաժանված է երկու լագերի, երկու սիստեմի՝ կապիտալիստականի ու սոցիալիստականի, երբ սոցիալիզմը հաղթել է երկրագնդի մեկ վեցերորդ մասում, երբ տեղի է ունենում նորանոր երկրների անխուսափելի անջատում կապիտալիստական սիստեմից։

Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ Սովետական Միության համաշխարհային-պատմական հաղթանակը, որ ձեռք բերվեց ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարությամբ, վճռական պայմաններ ստեղծեց, որպեսզի Կենտրոնական ու Հարավարևելյան Եվրոպայի մի շարք երկրների, Չինաստանի,



Հյուսիսային Կորեայի ժողովուրդները կարողանային իրենց բախտը վերցնել իրենց սեփական ձեռքը, հաստատել աշխատավորների իշխանություն՝ բանվոր դասակարգի ղեկավարությամբ, որն իրագործում է քաղաքի և գյուղի աշխատավորների դաշինքը, ու թևակոխել սոցիալիզմի կառուցման ուղին։

Ֆաշիստական պետությունների ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմում, Եվրոպայի ու Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների անջատումը կապիտալիստական սիստեմից՝ նշանակում են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացում, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ուժերի աճ ու ամրապնդում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում իրագործվում է Լենինի և Ստալինի գիտական մեծ կանխատեսությունը պրոլետարիատի դիկտատուրայի, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում քաղաքական տարբեր ձևերի էության, միջազգային նշանակության մասին։

Սոցիալիստական հասարակության շինարարության գծով Լենինի—Ստալինի պարտիայի պատմական ամենահարուստ փորձի թեորիական բազմակողմանի ընդհանրացումը, որ տրված է Ի. Վ. Ստալինի աշխատություններում, ժողովուրդների մեծ բարեկամ և ուսուցիչ ընկեր Ստալինի խորին իմաստությամբ լի խորհուրդները ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաներին օգնում են որոշելու սոցիալիզմի կառուցման հստակ հեռանկարները, ճիշտ որոշելու ժողովրդա-դեմոկրատական պետությունների զարգացման ու ամրապնդման հանգուցային հարցերը։

Իր հայրենիքի ազատությունն ու անկախությունը ձեռք բերած, ժողովրդական դեմոկրատիայի պետություն ստեղծած չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակը Չինաստանի ժողովրդական ռևոլյուցիայի ճակատագրի ու հեռանկարների մասին ընկեր Ստալինի իմաստուն

կանխատեսության հաստատումն է։ Չինական ռևոլյուցիայի ծանր փորձությունների տարիներին, ընկեր Ստալինը մատնացույց էր անում, թե «Չինաստանում ռևոլյուցիոն շարժման ուժերը անսահման են։ Դրանք դեռևս երևան չեն եկել ինչպես հարկն է։ Դրանք դեռևս երևան կգան ապագայում։ Արևելքի և Արևմուտքի կառավարողները, որոնք չեն տեսնում այդ ուժերը և պատշաճ չափով հաշվի չեն առնում դրանք, դրանից կտուժեն» (Երկ., հ. 7, էջ 293)։ Չինական ժողովրդական ռևոլյուցիայի մեծ հաղթանակը բազմապատկում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ուժերը։

Ընկեր Ստալինի կլասիկ երկերում պարունակվող ռևոլյուցիոն թեորիայի ամենահարուստ գանձարանից կոմունիստները և բոլոր առաջավոր բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան գիտելիքներ են քաղում հասարակական զարգացման օրենքների մասին, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրենքների մասին։

Ի. Վ. Ստալինը միջազգային բանվոր դասակարգի առաջնորդն է և ուսուցիչը։ Լենինի հետ միասին ընկեր Ստալինը կանգնած էր ծնունդ առնող կոմունիստական ինտերնացիոնալի օրորոցի մոտ։ Կոմինտերնի կոնգրեսներում և պլենումներում Լենինի և Ստալինի ելույթները միջազգային բանվորական շարժման և կոմունիստական պարտիաների կադրերը դաստիարակում էին մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարմության ոգով։

Կոմինտերնի պատմական ծառայությունները, ընկեր Ստալինի գնահատությամբ, այն էին, որ Կոմինտերնը կապեր հաստատեց և ամրապնդեց կապիտալիստական երկրների աշխատավորների միջև։ Կոմինտերնը մշակեց բանվորական շարժման թեորիական հարցերը առաջին համաշխարհային պատերազմից հետո, սահմանեց կոմունիզմի գաղափարների պրոպագանդայի ու ագիտացիայի հիմնական սկզբունքները և



կարևոր դեր խաղաց բանվոր դասակարգի լիդերների պատրաստման ու դաստիարակման գործում, որոնք ընդունակ են ղեկավարելու աճած մասսայական բանվորական պարտիաները։ Երկրորդ համաշխարհային պատերազմի պայմաններում միջազգային բանվորական շարժման զարգացման նոր էտապը պահանջեց կոմունիստական պարտիաների կապի նոր ձևեր։

Հաստատ պաշտպանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, ընկեր Ստալինը սովորեցնում է, որ մարքսիզմը և նացիոնալիզմը անհամատեղելի են, որ նացիոնալիզմը որպես բուրժուազիայի իդեոլոգիա ու քաղաքականություն՝ մարքսիզմի թշնամին է։ Ընկեր Ստալինը մեզ, բոլշևիկներիս և բոլոր երկրների կոմունիստներին նախազգուշացնում էր, որ իմպերիալիստական լագերը կփորձի դավաճաններ ու լըրտեսներ հավաքագրել նացիոնալիզմով և սոցիալիզմի նկատմամբ ատելությամբ վարակված մարդկանց թվից։ Այդպես էր ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման համար բոլշևիկյան պարտիայի և սովետական ժողովրդի մղած սուր պայքարի տարիներին, այդպես է տեղի ունենում այժմ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, որոնք թևակոխել են սոցիալիստական շինարարության ուղին։ Պատահական չէր այն հանգամանքը, որ Տիտո—Ռանկովիչի լրտեսական դահճային կլիկը, գործելով իր տերերի՝ անգլո-ամերիկյան իմպերիալիստների թելադրանքով, կարճ ժամանակամիջոցում բուրժուական նացիոնալիզմից անցավ մերկապարանոց ֆաշիզմին և Հարավսլավիայի ազգային շահերին ուղղակի դավաճանելուն։

Ընկեր Ստալինը բոլոր երկրների կոմունիստներին զինում է ռևոլյուցիոն զգաստությամբ՝ պրոլետարիատի թշնամիների նենգ ոտնձգությունների ու դավադրությունների հանդեպ, դասակարգային պայքարի օրենքների ըմբռնմամբ՝ կապիտալիստական շրջապատի պայմաններում։ Ընկեր Ստալինը միջազգային բանվոր դասակարգին սովորեցնում է ամրապնդել իր շարքերի

միասնությունը, պայքարել իմպերիալիստական բուրժուազիայի աջ սոցիալիստական գործակալության դեմ։

Ընկեր Ստալինը խաղաղության պաշտպանության համար, ագրեսորների և նոր պատերազմի հրձիգների դեմ ժողովուրդների մեծ պայքարի ոգեշնչողն է։ Ընկեր Ստալինը սովորեցնում է, թե անհրաժեշտ է աշխատավորների լայն մասսաների ամենաակտիվ, ամենօրյա պայքար ծավալել պատերազմի հրձիգների և կեղծ սոցիալիստական պարտիաներում եղած նրանց գործակալության դեմ։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ համաշխարհային կապիտալիզմի զարգացումը, առավել ևս մեր օրերում, տեղի է ունենում ճգնաժամերի և ռազմական կատաստրոֆների միջոցով, և ո՛չ թե պլանային ու հավասարաչափ առաջընթացի կարգով։ Պատերազմի սաստկացող սպառնալիքի պայմաններում պատերազմ հրահրելու ուղղությամբ ագրեսորների ամեն մի փորձի դեմ ուղղված մասսաների յուրաքանչյուր վճռական ակտիվ բողոք ծառայում է և կծառայի խաղաղության, անվտանգության և ժողովուրդների ազգային սուվերենության համար պայքարի վսեմ գործին։

Երկու համաշխարհային պատերազմների, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմի փորձը շատ բան սովորեցրեց բոլոր երկրների ժողովուրդներին։ Ընկեր Ստալինը նշել է. «Ժողովուրդների հիշողության մեջ չափազանց կենդանի են վերջին պատերազմի սարսափները և շատ մեծ են խաղաղության կողմնակից հասարակական ուժերը, որպեսզի ագրեսիայի գծով Չերչիլի աշակերտները կարողանային հաղթահարել դրանց և շուռ տալ նոր պատերազմի կողմը»։

Մեր ժամանակի պատմական իրադրությունն արմատապես տարբերվում է այն իրադրությունից, որի մեջ պատրաստվում էին առաջին ու երկրորդ համաշխարհային պատերազմները։ Մարդկության պատմության մեջ առաջին անգամ ծագեց խաղաղության կազմակերպված ճակատ, որն իրեն խնդիր է դրել՝ մարդկությունը փրկել նոր, համաշխարհային պատերազմից, մերկացնել



և մեկուսացնել նոր պատերազմի հրձիգների արյունոտ ավազակախումբը, ապահովել ժողովուրդների խաղաղ համագործակցությունը։

Վերջին տարիների ընթացքում դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ուժերի հսկայական աճը չպետք է, սակայն, ոչ մի ինքնահանգստացում առաջ բերի խաղաղության համար մարտնչողների շարքերում։ Պատմական փորձը վկայում է, որ որքան ավելի անհուսալի է իմպերիալիստական ռեակցիայի գործը, այնքան ավելի է մոլեգնում նա, այնքան ավելի է աճում վտանգը ռազմական ավանտյուրաների, որոնց մեջ իմպերիալիստական բուրժուազիան ելք է որոնում ճգնաժամերից։

Նոր պատերազմի ուժեղացող սպառնալիքի պայմաններում կոմունիստական և բանվորական պարտիաների վրա դրվում է մեծ, պատմական պատասխանատվություն։ Կայուն և տևական խաղաղության համար, խաղաղության կողմնակիցների հետագա կազմակերպման ու համախմբման համար մղվող պայքարը,— ինչպես նշված է Կոմունիստական պարտիաների Ինֆորմացիոն բյուրոյի բանաձևում, «ներկայումս կենտրոնական տեղ պետք է գրավի կոմունիստական պարտիաների և դեմոկրատական կազմակերպությունների ամբողջ գործունեության մեջ»։

Ընկեր Ստալինը մեծ դրոշակակիրն է խաղաղության քաղաքականության, որը Սովետական Միությունն անշեղորեն վարել է և վարում է կապիտալիստական շրջապատման դժվարին պայմաններում։

Որոշելով մեր արտաքին քաղաքականության նպատակները, ընկեր Ստալինը նշել է. «Մենք կողմնակից ենք խաղաղության և պաշտպանում ենք խաղաղության գործը» («Լենինիզմի հարցերը», էջ 438)։

Ստալինյան արտաքին քաղաքականությունը ամբողջ աշխարհում խաղաղության հաստատման քաղաքականություն է, դա բխում է երկու սիստեմների տնտեսական համագոյակցության հնարավորությունից։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում ընկեր Ստալինի ելույթները խորտակիչ հարվածներ են հասցրնում նոր պատերազմի հրձիգներին, ամբողջ երկրագնդում հարյուր միլիոնավոր հասարակ մարդկանց պայքարի են հանում խաղաղության պաշտպանության համար։

Բոլոր երկրների ժողովուրդների և, առաջին հերթին, գերմանական ժողովրդի մեջ ամենալայն արձագանքը գտավ Ի. Վ. Ստալինի պատմական ողջույնը Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Վիլհելմ Պիկին և Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կառավարության պրեմիեր-մինիստր Օտտո Գրոտեվոլին, մի ողջույն, որի մեջ նշվում էր, թե «Գերմանական դեմոկրատական խաղաղասեր ռեսպուբլիկայի կազմակերպումը շրջադարձային կետ է Եվրոպայի պատմության մեջ»։ Այդ ողջույնը գերմանական ժողովրդի մեջ ակտիվացրեց դեմոկրատական խաղաղասեր ուժերին, բոլոր նրանց, ովքեր ցանկանում են գերմանական ժողովրդին փրկել անգլո-ամերիկյան իմպերիալիստների շահերի համար երրորդ համաշխարհային պատերազմում թնդանոթային միս լինելու խայտառակ վիճակից։

Օրեցօր աճում և ամրապնդվում են խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի լագերի ուժերը։ Հենց դրա համար են այնպես կատաղում ու մոլեգնում պատերազմի հրձիգները, աշխատելով ահաբեկել և սարսափեցնել ժողովուրդներին։ Սակայն պատմության ամբողջ փորձը՝ երկու համաշխարհային պատերազմների հետևանքով կապիտալիզմի սիստեմից 800 միլիոն մարդկանց ռևոլյուցիոն անջատումը խոսում են այն մասին, որ ոչ թե մենք, այլ իմպերիալիստները պետք է վախենան երրորդ համաշխարհային պատերազմից։

Եթե իմպերիալիստական պարագլուխները համարձակվեն հրահրել երրորդ համաշխարհային պատերազմ, այդ պատերազմում նրանք կգտնեն ոչ թե արդեն առանձին կապիտալիստական պետությունների, այլ ամբողջ համաշխարհային կապիտալիզմի խորտակումն ու կործանումը։



## V. Ի, Վ. ՍՏԱԼԻՆԸ ՍՍՌՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՈԳԵՇՆՉՈՂՆ ՈՒ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

Հետպատերազմյան ժամանակաշրջանում ընկեր
Ստալինը սովետական ժողովրդին ոգեշնչում և կազմակերպում է նվաճված դիրքերն ամրապնդելու և դեպի
նոր տնտեսական վերելքը, դեպի կոմունիզմ առաջ
շարժվելու համար։

Սոցիալիստական տնտեսության վերականգնման
ու հետագա զարգացման հուսակապ ծրագիրը տրվեց
1946 թվի փետրվարի 9-ին Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական
ժողովում Ի. Վ. Ստալինի ելույթում։ Ընկեր Ստալինը
խնդիր առաջադրեց՝ նոր հնգամյակի տարիներին բուժել մեր երկրին թշնամու հասցրած վերքերը, վերականգնել և զգալի չափով գերազանցել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը։ Ավելի երկարատև ժամանակաշրջանի
համար Ի. Վ. Ստալինը պարտիայի առաջ խնդիր դրեց՝
կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր, հզոր
վերելք, որպեսզի արդյունաբերության մակարդակը նախապատերազմյանի համեմատությամբ բարձրացվի երեք անգամ, հասնել այն բանին, որպեսզի մեր արդյունաբերությունը կարողանա տարեկան արտադրել մոտ
50 միլիոն տոննա չուգուն, մոտ 60 միլիոն տոննա
պողպատ, մոտ 500 միլիոն տոննա ածուխ, մոտ 60
միլիոն տոննա նավթ։ «Այդ պայմանով միայն,— նշել է
Ի. Վ. Ստալինը,— կարելի է համարել, որ մեր հայրենիքը ապահովված կլինի ամեն տեսակ պատահականություններից։ Դրա համար կպահանջվի գուցե երեք
նոր հնգամյակ, եթե ոչ ավելի։ Բայց այդ բանը կարելի
է անել և մենք պետք է այդ անենք»։

Սովետական ժողովուրդը բոլշևիկների պարտիայի,
ընկեր Ստալինի ղեկավարությամբ ոգևորությամբ ձեռնամուխ է եղել այդ վիթխարի խնդիրները լուծելու գոր-

ծրի։ Լենինի—Ստալինի պարտիան գլխավորեց համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ հետպատերազմյան հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Դժվարությունները հսկայական էին։ Ֆաշիստական ճիվաղները մեր ժողովրդին պատճառել էին վիթխարի նյութական վնաս։ Ֆաշիստական զավթիչներից տուժած շրջաններում ավերվել էին քաղաքներն ու գյուղերը, արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունները, տրանսպորտի միջոցները։ 25 միլիոն բնակչություն մնացել էր անօթևան։ Ամեն մի այլ նույնիսկ ամենախոշոր կապիտալիստական պետություն, այդպիսի վնաս կրելով, տասնյակ տարիներ ետ շպրտված կլիներ և կվերածվեր երկրորդական տերության։ Պարտիան և սովետական պետությունը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, ամենակարճ ժամկետում և այն էլ առանց դրսի օգնության կարողացան հասնել ժողովրդական տնտեսության վերականգնմանն ու նոր վերելքին։ Սովետական երկրի տնտեսական զարգացման հետպատերազմյան տեմպերը վառ կերպով վկայում են, թե ինչպիսի անհաղթահարելի ուժ են հաղորդում մեր ժողովրդին սոցիալիստական կարգը, բոլշևիկների պարտիայի քաղաքականությունը, նրա առաջնորդի իմաստուն ղեկավարությունը։

ՍՍՌՄ էկոնոմիկան անշեղ բարձրանում է, հասնելով նոր հզոր վերելքի, մինչդեռ ԱՄՆ-ում և կապիտալիստական մյուս երկրներում գնալով երևան են գալիս տնտեսական ճգնաժամի ու անկման ավելի շատ նշաններ։ Պատերազմից չտուժած ԱՄՆ-ի արդյունաբերության արտադրանքը 1948 թվի հոկտեմբերից իջել է 22 տոկոսով, իսկ ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքն այդ ժամանակամիջոցում աճել է 20 տոկոսով և 1949 թվի հոկտեմբերին 1940 թվի ամսական միջին արտադրանքը գերազանցել է ավելի քան 50 տոկոսով։ Հետպատերազմյան հնգամյակը կատարվում է ժամկետից շուտ։ Արագորեն առաջ է ընթանում սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Ավերակներից ու մոխրից



բարձրանում են զավթիչների կողմից ավերված քաղաքներն ու գյուղերը։ Մինչդեռ կապիտալիստական երկրներում իջնում է աշխատավորների կենսամակարդակը, ուժեղանում են աղքատությունը, գործազրկությունը, ՍՍՌՄ-ում ժողովրդի նյութական դրությունը անշեղորեն բարելավվում է։

Հետպատերազմյան հնգամյակը հանդիսանում է
ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման ստալինյան ծրագրի
բաղկացուցիչ մասը։ Սովետական ժողովուրդը կոմու-
նիզմ է կառուցում Ի. Վ. Ստալինի զարգացրած և ավե-
լի բարձր աստիճանի բարձրացրած գիտական թեորիա-
յի հիման վրա։ Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ
սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար ամենից
առաջ պետք է ստեղծել կոմունիզմի նյութական բազա։
Դրա համար ժողովրդական տնտեսության մեջ անհրա-
ժեշտ է հետագա անընդհատ տեխնիկական առաջադի-
մություն՝ աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացնելու նպատակով, որովհետև, ինչպես նշել է ընկեր
Ստալինը, դրանումն է առաջ, դեպի կոմունիզմ ընթա-
նալու առաջին հիմնական պայմանը։

Բնության վերափոխման ստալինյան վիթխարի
պլանը, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման հեռ
միասին, կազմում է կոմունիզմի կառուցման մեծ ծրա-
գրի, նրա նյութական բազայի ստեղծման մի մասը։
Լենինի—Ստալինի պարտիայի կողմից ղեկավարվող սո-
վետական ժողովուրդը հաջողությամբ է իրագործում
այդ ծրագիրը, ամբողջ եռանդով պայքարելով արտա-
դրողական ուժերը ամեն կերպ զարգացնելու համար։
Ոգեշնչված Ի. Վ. Ստալինի գաղափարներով, սովետա-
կան ժողովուրդը իրեն է հնազանդեցնում բնության ու-
ժերը, ցամաքեցնում է ճահիճները, փոփոխում է կլի-
ման, անապատները դարձնում է ծաղկուն այգիներ,
բնության ուժերը ի սպաս է դնում աշխատավոր մարդ-
կությանը։

Սովետական գիտությունը պատվով է կատարում
ստալինյան նակազը՝ «մոտիկ ժամանակներս ո՛չ միայն

հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից»։ ՍՍՌՄ-ում տեխնիկական հզոր առաջադիմության և գիտության զարգացման ցուցանիշներից մեկն է հանդիսանում կարճ ժամկետում ատոմային էներգիայի գաղտնիքին տիրապետելը։ Կապիտալիզմի պայմաններում գիտության և տեխնիկայի բոլոր հայտնագործությունները հանդիսանում են շահագործումն ուժեղացնելու, ժողովուրդներին ստրկացնելու ու բնաջնջելու գործիք։ Մեծ Ստալինի կողմից ղեկավարվող սովետական մարդկանց ձեռքում գիտության, դրանց թվում նաև ատոմային էներգիայի, հայտնագործությունները, հզոր միջոց են ծառայում մինչև այժմ չտեսնված տեխնիկական առաջադիմության համար, որն ապահովում է մեր երկրի հետագա առաջընթացը դեպի կոմունիզմ։ Ի. Վ. Ստալինի կողմից ցույց տրվող ուղիով զարգանում է սովետական գիտնականների համագործակցությունն առաջավոր բանվորների, ինժեներների, տեխնիկների, կոլխոզնիկների հետ հանուն կոմունիզմի կառուցման մեր երկրում։

Ստալինյան նախագծումներով հաղթահարվում են բանվորների և կոլխոզնիկ գյուղացիների միջև եղած դասակարգային տարբերությունները, նրանց և ինտելիգենցիայի միջև եղած սահմանները, քաղաքի և գյուղի միջև եղած հակադրությունը և ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած հակադրությունը. հաջողությամբ կենսագործվում է ստալինյան մեծ առաջադրանքը՝ բոլոր բանվորներին ու գյուղացիներին դարձնել կուլտուրական և կրթված։

Ի. Վ. Ստալինը հայտնագործեց և հիմնավորեց, որ ստախանովյան շարժումը ուղի է հարթում դեպի կոմունիզմ, որ նա իր մեջ պարունակում է աշխատավորների կուլտուր-տեխնիկական այնպիսի վերելքի հատիկ, որը տանում է դեպի հակադրության վերացումը մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև։ Ի. Վ. Ստալինի կողմից ոգեշնչվող սոցիալիստական մրցությունն այժմ դարձել է համաժողովրդական շարժում։



Անցումը դեպի կոմունիզմ պահանջում է ստեղծել ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր բարիքների առատություն, պահանջում է գիտության, արվեստի ծաղկում, աշխատավորների բոլոր ստեղծարար ուժերի, ընդունակությունների ու տաղանդների ծաղկում, սոցիալիստական ազգերի ու նրանց կուլտուրաների ծաղկում։ ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրան զարգանում է լենինյան-ստալինյան մեծ գաղափարների դրոշի ներքո։ Ընկեր Ստալինի «Ազգային հարցը և լենինիզմը» հիանալի երկի մեջ նշվում է, որ սոցիալիստական ազգերն ավելի համախմբված, կենսունակ և համաժողովրդական են, քան բուրժուական ամեն մի ազգ։ ՍՍՌՄ-ի սոցիալիստական ազգերը, առաջ շարժվելով դեպի կոմունիզմ, ստեղծում են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական իրենց կուլտուրան, ղեկավարվելով Լենինի և Ստալինի մեծ գաղափարներով։

Ընկեր Ստալինը կուլտուրայի սովետական գործիչներին սովորեցնում է, որ նրանք չունեն և չեն կարող ունենալ այլ շահեր, բացի ժողովրդի շահերից, որ նրանք պետք է ղեկավարվեն կոմունիստական պարտիայի քաղաքականությամբ, որը կազմում է սովետական կարգի կենսական հիմքը, որ նրանց միջավայրում անհանդուրժելի է գաղափարազրկության, ապոլիտիկության, նեխած լիբերալիզմի և ապականված բուրժուական իդեոլոգիայի ու «կուլտուրայի» առաջ ստորաքարշության քարոզը։ Իդեոլոգիական հարցերի վերաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումները, որոնք ընդունվել են ընկեր Ստալինի նախաձեռնությամբ, սովետական կուլտուրայի գործիչներին զինում են կոմունիզմի համար մղվող պայքարի սուր զենքով, սոցիալիստական կուլտուրան բարձրացնում են նոր, ավելի բարձր մակարդակի։ Սովետական ժողովուրդն իր գիտնականներից, գրողներից, գեղարվեստագետներից սպասում է նոր, բարձր գաղափարականություն ունեցող երկեր, որոնք արժանի լինեն ստալինյան դարաշրջանին, ոգեշնչեն նոր սխրագործությունների կոմունիզմի համար մղվող պայքարում։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ նորի, առաջավորի, պրոգրեսիվի պայքարը հնի, իր դարն ապրածի դեմ ամեն մի զարգացման օրենքն է։ Ընկեր Ստալինը սովետական մարդկանց կոչ է անում չգոռոզանալ և դափնիների վրա չհանգչել, այլ լինել անհաշտ աշխատանքում եղած թերությունների դեմ պայքարելու գործում։ Առանց քննադատության և ինքնաքննադատության չկա առաջընթաց շարժում։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը սովետական հասարակության զարգացման հատուկ օրինաչափությունն է և շարժիչ ուժը, որը հայտնագործել է Ի. Վ. Ստալինի հանճարը։ Քննադատության ու ինքնաքննադատության ամեն կերպ զարգացումը կոմունիզմի հաջող կառուցման անհրաժեշտ պայմանն է։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում սովետական հասարակության հիմնական ղեկավար ուժը հանդիսանում է կոմունիստական պարտիան։ Ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ աճում, ամրապնդվում և կոփվում է մեր փառապանծ կոմունիստական պարտիան, կոմունիզմի բոլոր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը։ Պարտիան ամենօրյա ղեկավարություն է ցույց տալիս կոմունիզմի կառուցման գլխավոր գործիքը հանդիսացող սովետական պետության տնտեսական և կուլտուր-դաստիարակչական ամենաբարդ գործունեության նկատմամբ։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ պարտիան սովետական մարդկանց դաստիարակում է կոմունիզմի ոգով, սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով և անհաշտ պայքար է մղում մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ։ Պարտիան բարձրացնում է սովետական ազգային հպարտության զգացմունքները, մեր երիտասարդությունը դաստիարակում է առույգ, իր գործին հավատացող, դեպի կոմունիզմ տանող ճանապարհին բոլոր խոչընդոտները հաղթահարելու պատրաստ։



Լենինը և Ստալինը սովորեցնում են, որ նոր, սոցիալիստական հասարակության շինարարության կարևորագույն գծերից մեկը ժողովրդական լայն մասսաների գիտակցական և ակտիվ պատմական ստեղծագործությունն է։

Ընկեր Ստալինը մերկացրեց այն ռեակցիոն թեորիաները, թե շահագործվողները իբր չեն կարող կառավարել առանց շահագործողների։ Ընկեր Ստալինը ցույց տվեց, որ աշխատավոր մասսաները կարող են կառուցել նոր հասարակություն առանց շահագործողների և ընդդեմ շահագործողների։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակները, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական շինարարության հաջողությունները Լենին-Ստալինի ուսմունքի փայլուն հաստատումն են։

Ի. Վ. Ստալինի մեծ ծառայությունն այն է, որ նա ամբողջ հասակով դրեց նոր հասարակության կառուցման գործում աշխատավոր կանանց ներգրավելու խնդիրը, ամբողջ ուժով ընդգծելով բանվորուհիների և գեղջկուհիների կարևորագույն դերը երկրի տնտեսական ու հասարակական-քաղաքական կյանքում, նշելով որ կանայք մեծ ուժ են։ Ընկեր Ստալինը խնդիր առաջադրեց կանանց ավելի համարձակ կերպով, վճռականորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշել արտադրության մեջ, պետական և պարտիական ապարատում, կուլտուրայի, շինարարության մեջ։ Այդ խնդիրն անշեղորեն իրագործվում է մեր երկրում։ Այդ է վկայում աշխատավոր կանանց ակտիվ մասնակցությունը սոցիալիզմի կառուցմանը ստալինյան երեք հնգամյակների տարիներին, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, կոմունիզմի հետպատերազմյան շինարարության տարիներին։ Ի. Վ. Ստալինի առաջադրած այդ խնդիրը պետք է այսուհետև էլ պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում լինի։

Սովետական հայրենասիրության, սոցիալիստական մրցության համաժողովրդական հզոր վերելքը

հետպատե-
բնութագրում է կոմունիզմի շինարարության
րազմյան ժամանակաշրջանը։ Այդ վերելքն իր դրսևո-
րումն է գտնում սովետական մարդկանց աշխատան-
քային սխրագործությունների մեջ։ Սիրելի առաջնորդին
ուղարկած իրենց նամակներում աշխատավորներն ար-
տահայտում են իրենց նվիրական խոհերը և անսասան
կամքը՝ լենինյան-ստալինյան ուղիով առաջ ընթանալ
դեպի կոմունիզմ։ Ի. Վ. Ստալինի՝ կոմունիստական հա-
սարակության մեծ ճարտարապետի գաղափարները, կո-
մունիզմի յուրաքանչյուր նոր ծիլի նկատմամբ, նոր
հասարակություն կառուցող մարդկանց նկատմամբ նրա
հայրական հոգատարությունը թևավորում են սովետա-
կան մարդկանց։ Աճում է առաջավորների, նորարարնե-
րի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների, Ստալին-
յան մրցանակների լաուրեատների ստալինյան բանակը։
Մարքսիստական-լենինյան գիտության մեծ կորի-
ֆեյներ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի հանճարեղ երկե-
րըն այժմ ուսումնասիրում են միլիոնավոր կոմունիստ-
ներ և անկուսակցականներ։ Նրանց աշխատություններով
սովետական մարդիկ սովորում են կոմունիզմ կառու-
ցել։ Հանուն կոմունիզմի կառուցման ավելի լավ պայ-
քարելու համար լենինյան-ստալինյան մեծ ուսմունքը
ավելի լայնորեն և ավելի խոր կերպով ուսումնասիրելը,
Լենինի և Ստալինի կենսագրությունները, նրանց երկե-
րըն ուսումնասիրելը— մեր կադրերի, սովետական բո-
լոր մարդկանց կենսական խնդիրն է։
Սովետական Միության մեջ Ի. Վ. Ստալինի ղեկա-
վարությամբ միաձուլվել և անբաժան ամբողջություն
են դարձել երկու մեծ ուժ՝ ժողովուրդը և կոմունիզմը։
Մեր ժողովուրդը առաջ է ընթանում մարքսիստական-
լենինյան անմենահաղթ թեորիայով զինված պանծալի
կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, աշխա-
տավորների սիրելի հայր, ուսուցիչ և առաջնորդ ընկեր
Ստալինի ղեկավարությամբ։ Դրա մեջ է սովետական
ժողովրդի ուժի և անպարտելիության աղբյուրը։ Դրա
մեջ է մեր երկրում կոմունիզմի հաղթանակի երաշխիքը։



Աշխարհում չկա [illegible] ուժ, որը կարողանար
կանգնեցնել սովետական ժողովրդի [illegible] շարժու-
մը դեպի կոմունիզմ։

***

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողո-
վրդի մեծ ուսուցիչ և առաջնորդ ընկեր Ստալինը մեր
բոլոր հաղթանակների ոգեշնչողն է ու կազմակերպիչը,
պարտիայի և Սովետական պետության առաջատար ու-
ժը։ Ընկեր Ստալինն ամբողջ պրոգրեսիվ մարդկության
ուսուցիչն է և բարեկամը, խաղաղության, դեմոկրա-
տիայի և սոցիալիզմի դրոշակակիրը։
Մենք ապրում ենք ստալինյան մեծ դարաշրջանում,
երբ տեղի է ունեցել համաշխարհային պատմության
ընթացքի այն արագացումը, որի մասին երազում էր
Լենինը։ Բացառիկ ուժով է դրսևորվում սովետական ժո-
ղովրդի սերը դեպի իր մեծ ուսուցիչ, առաջնորդ և բարե-
կամ ընկեր Ստալինը։ Ընկեր Ստալինի ծննդյան 70-ամ-
յակի պանծալի տարեթիվը սովետական մարդիկ նը-
շում են ստեղծագործության ակտիվության նոր վերել-
քով և աշխատանքային նորանոր սխրագործություննե-
րով հանուն կոմունիզմի կառուցման։ Բոլոր երկրների
աշխատավորները հայտնում են իրենց սերը և նվիրվա-
ծությունը Ի. Վ. Ստալինին և խաղաղության, դեմոկրա-
տիայի ու սոցիալիզմի գործի համար մղվող մեծ պայ-
քարում ընկեր Ստալինի հետևից ընթանալու իրենց
պատրաստակամությունը։
Հարազատ և սիրելի Ստալինի անունը շուրթերին
սովետական մարդիկ կառուցում են կոմունիստական
հասարակություն։
Թանկագին Ստալինի անունը շուրթերին ժողովրդ-
ական դեմոկրատիայի երկրների աշխատավորները
թևակոխել են սոցիալիզմի հաջող շինարարության ու-
ղին։
Թանկագին Ստալինի անունը շուրթերին խաղաղու-

թյան վեց հարյուր միլիոն կազմակերպված կողմնակիցներ պայքարում են հանուն խաղաղության պաշտպանության, ընդդեմ պատերազմի հրձիգների։

Ստալինի անունն արտահայտում է հաղթական Սովետական Միության մեծությունը և ամբողջ աշխարհի ժողովուրդներին պայքարի է տանում լավագույն ապագայի համար, մարդկության երջանկության համար։

Թող երկար ու երկար տարիներ ապրի մեծ առաջնորդ, ուսուցիչ և բարեկամ Ի. Վ. Ստալինը՝ հուրախություն ամբողջ աշխատավոր մարդկության։

Ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ, առա՜ջ, դեպի կոմունիզմ։

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻ-
ԷՆԳԵԼՍԻ-ԼԵՆԻՆԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

---

Պատասխանատու խմբագիր՝ Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

ՎՖ 04695 Պատվեր 952 Տիրաժ 8350

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

...ел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 24 1949 г.